ԷՄՄԱՆՈՒԷԼ Քահ. ՆԱԶԱՐԵԱՆՑ

# ՅԻՍՈՒՍ ՔՐԻՍՏՈՍԻ
## Մ Կ Ր Տ ՈՒ Թ Ի Ւ Ն Ը

(ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՆՈՒԹԵԱՆ ՀԱՄԱՐ)

Nazareants', Emmanuel

# ՅԻՍՈՒՍ ՔՐԻՍՏՈՍԻ

## ՄԿՐՏՈՒԹԻՒՆԸ

Hisus K'ristos mkrtut'iwne

*(Ժողովրդական ընթերցանութեան համար)*

---

Գրեց

## ՍԱՐԿԱՒԱԳ Ց. ՆԱԶԱՐԵԱՆՑ

---

ԹԻՖԼԻՍ

*Տպարան Մ. Շարաձէ*

*1892*

ԼՈՒՍԱՒՈՐՉԱԿԱՆ

հայոց

ՍԻՆՈԴ ՍՐԲՈՅ ԷՋՄԻԱԾՆԻ

Ըստ

Դատաստանական մասին

Թ. 4358

Ի 4 Դեկտ. 1891 ամի

.....................

Ի Ս. Էջմիածին.

**Շնորհունակ Յովհաննու Սարկաւագի Նազարեանց Տփխիսեցւոյ.**

Առաջի արարեալ ընդ յայտարարութեան Ձերում ի 17 Հոկտեմբերի անցելոյ երկասիրութիւնդ «Յիսուս Քրիստոսի Մկրտութիւնը» վերաձայնեալ՝ յետ ի քնին առնելոյ ի ձեռն գրաքննիչ Գերապատիւ Արիստակէս եպիսկոպոսի, գտաւ արժանի տպագրութեան:

Ուստի ընդ սմին դարձուցանի այն առ Ձեզ:

**Անդամ Սինոդի Արիստակէս եպիսկոպոս.**
**Պաշտ. Գործավարի Բենիամին Տէր-Գրիգորեան.**

Եւ Յովհաննէս արգելու զնա եւ ասէ. «Ինձ պիտոյ է ի քէն մկրտել, եւ դու առի՞ս գաս»:

Պատասխանի ետ Յիսուս եւ ասէ ցնա. «Թո՛յլ տուր այժմ, զի այսպէս վայել է մեզ լնուլ զամենայն արդարութիւն». եւ ապա թոյլ ետ նմա:

Մատթ. Գ 14-16

# ԷՍ ԳՐՈՒԸԾՔԻՍ ԿԸՐԴԸՑՈՂՆԵՐԻՆ

*Սի՛րելի կարդացող.*

*Մարդս աշխարհքումս ինչ տեսնում լսում է՝ սովո՛րում է: Իհարկէ, լա՛ւ է անում որ սովորում է, բայց աւելի լաւը նա՛ է անում, ով ինչ սովորում է՝ հա՛ստատ է սովորում, հիմքի՛ցն է սովորում: Թէ չէ՝ պակաս-պռատ սովորելը, սխալ-մխալ սովորելը՝ հա՛ էլած, հա չէլած - մի և նոյն է. նրանից ո՛չ իրան շահ կայ, ոչ ուրիշին:*

*Հեռու չգնանք: Էսօր ամէն քրիստոնեայ՝ գիտուն թէ անգէտ, հարուստ թէ աղքատ, մեծ թէ փոքր, ամենքը շտապում են դէպի եկեղեցի ու դէպի Յորդանան: Դու տե՛ս թէ՝ ի՛նչ սուրբ, ի՛նչ հրաշալի բան է հաւատը, էն էլ քրիստոնէական լուսաբաբա՛խ հաւատը, որ էսքան մարդկանց ուշքն ու միտքը դէպի մի՛ կողմն է քաշում. աշխարհքիս չորս հարիւր միլիոն քրիստոնեաների սրտի թելերը մի՛ տեսակ է շարժում թրթռացնում: Հաւատի մեծութիւնն ու զօրութիւնը դու էնտե՛ղ տես, որ էսօր էն մարդն է՛լ է Յորդանանի մասին մտածում, ով որ ամբողջ տարին ոչ Աստուած է միտքը բերել, ոչ եկեղեցու կողքովն անց կացել: Հապա էս ցուրտ ու ղիամաթին՝ գետումը, սառցի կտորների մէջ անվախ, աներկիւղ լողացողների հաւատին, ի՞նչ կ՚ասես: Հիմա ա՛րի ու դու հարցրու, թէ էդ 400 միլիոն քրիստոնեաներից քա՛նիսն է լաւ, տե՛ղեակ հասկանում էսօրուայ տօնի նշանակութիւնը, եւ որ ասեմ՝ հարի՛ւրից մէկը, դու ասա՝ հազա՛րից մէկը չի ըլի հասկանալիս:*

*Է՛ս է պատճառը, սի՛րելիս, որ ես էլ ուզում եմ մի քիչ գլուխդ ցաւացնել ու ցերեկուայ լսի պես առաջդ դնել թե՝ էսօրուան օրը ի՛նչ օր է: Յոյս ունեմ, որ ինչքան էլ դու սրա մասին շա՛տ բան գիտենաս, է՛լի, առանց էն չի՛ ըլի որ գիտեցածիդ մէջը մի պակասութիւն չըլի. ամենքս սխալական ենք. անսխալը Տէրն Իսուն է միայն:*

*Եւ, երբ դու էս գրածս կարդալուց յետոյ չասես քեզ ու քեզ. «Ափսո՜ս ժամանակ որ զուր կորցրի. ափսո՜ս իմ կոպէկներ, որ էս մրոտած թղթին տուի»-էն ժամանակը ես իմ մուրազին հասած կ՚ըլեմ.*

էն ժամանակը եւ էնպէս կը համարեմ թէ՝ ինձնից ոչ թէ կոպէկներ, այլ՝ ռուբլիներ եմ ստացել. էն ժամանակը եւ էլ ցերեկուն կը զգամ ոյժ, առտուն՝ աշխոյժ, և կը գրեմ էսպէսի բաներ յո՛յժ (շա՛տ շա՛տ). մի՛ խօսքով եւ էլ ինձնից ցերեկ վեր առնողը չեմ. տարին տասներկու ամիս կը գրե՞մ ու կը գրեմ: Դու ականջ դնո՛ղ ասա, թէ չէ՝ ասելու խօսելու, գրելու պատմելու է՛նքան բան կայ, է՛նքան բան, որ ո՛չ ասելով կը հատնի, ոչ լսելով կը վերջանայ:

ՍԱՐԿԱՒԱԳ Յ. ՆԱՁԱՐԵԱՆՑ

14 Հոկտեմբերի 1891 Թիֆլիս

# ՅԻՍՈՒՍ ՔՐԻՍՏՈՍԻ

## ՄԿՐՏՈՒԹԻՒՆԸ

## Ը

Մեր Տէր Յիսուս Քրիստոսը ծնուեցաւ Յունուարի 6-ին: Նրա 30 տարին էլ, անշուշտ, լրացաւ Իր ծնուած օրը՝ Յունուարի 6-ին: Եւ Յիսուս 30 տարուց յետոյ գնաց Յովհաննէս Մկրտչից մկրտուեցաւ: Է՛ս պատճառով մենք էլ Քրիստոսի ծնունդն ու մկրտութիւնը կատարում ենք մի՛ օրուայ մէջ՝ Յունուարի 6-ին:

Ինչի՞ էր մկրտւում Քրիստոս և ի՛նչ մի երևելի մարդ էր Յովհաննէսը, որ Նրան մկրտեց: Առաջ խօսենք Յովհաննէսի մասին: Սրան ճանաչելու համար մենք պէտք է մօտ 1900 տարի յետ գնանք և մտնենք հրէաների երկիրը, որի անունն էր Պաղեստինէ: Բայց ի՛նչ ունենք հրէաների երկրում. և մի՞թէ միայն մենք հայերս ենք, որ պէտք է անպատճառ հրէաների երկիրը գնանք: Ո՛չ. աշխարհիս բոլոր քրիստոնեայ ազգերն էլ էնտե՛ղ պէտք է գնան՝ Յովհաննէսին ճանաչելու համար: Ինչի՞. որովհետև նրա երկիրն էն էր, նրա ազգն էլ էնտեղ էր բնակւում: Իսկ մօտ 1900 տարի յետ գնալներուս պատճառն էն է, որ Յովհաննէսն ու Քրիստոս էն ժամանակուայ մարդիկ էին:

Էս էլ պետք է գիտենաս, սի՛րելիս, որ հրէաները, որոնց հիմա բոլոր քրիստոնեայ ազգերը ատելով ատում են, կար ժամանակ որ Աստծու ամենասիրելի ու ընտրեալ ազգն էին: Էն ժամանակը Աստուած հայ, վրացի, բերձէն, ասորի չէ՛ր ճանաչում. և ի՞նչպէս կարող էր ճանաչել, երբ նրանք իրան Աստուած չէին ճանաչում, այլ ամենքը պղնձից, երկաթից, ոսկուց, արծաթից՝ մարդու նմանութիւնով, իրանց ձեռքով կուռքեր էին շինում և նրա՛նց էին հաւատում ու գլուխ վէր բերում. նրա՛նց էին իրանց աստուածները համարում ու պաշտում:

Ողջ աշխարհքի երեսին էն ժամանակը միայն հրէանե՛րն էին, որ պաշտում էին մէ՛կ ճշմարիտ Աստծուն. մենակ հրէանե՛րն էին հասկանում ու հաւատում, որ մէկ Աստուած կայ, ու էն մէկ Աստուա՛ծն է ստեղծել ամէն բան՝ թէ՛ աշխարհքը և թէ ի՛նչ որ

կայ Նրա տակն ու վրէն, մէջն ու չորս կողմը: Էն ժամանակուայ բոլոր ազգերին ասում էին հեթանոս կամ կռապաշտ. միայն հրէաներն էին ասւում՝ աստուածապաշտ: Իմ ու քո պապն էլ, սի՛րելիս, մեր էն պատուական հայրերն ու մայրերն էլ՝ ճշմարիտ Աստուածը թողած՝ կուռքեր էին պաշտում: Խաւար ժամանակներ:

Ուղի՛ղ է, հրէաները մէկ հատիկ աստուածապաշտ ազգն էին էն ժամանակը, և Աստուած իր աչքի լսի պէս էր սիրում ու պահում նրանց, բայց նրանք էլ ժամանակ ժամանակ կուրանում քոռանում էին ու էդպէսով մոռանում էին իրանց պահպանող Աստծուն. և իբր թէ մեր պապերը շա՛տ լաւ բան էին անում, որ կուռքեր էին պաշտում, նրանք էլ, էն ողորմելիներն էլ նրանցից ու նրանց պէս ուրիշ հարևան կռապաշտներից կուռք պաշտել էին սովորում: Աստուած էլ՝ աչքերը հանեց, երեսը շուռ տուեց նրանցից ու ողջ հրեայ ազգին՝ ինչպէս մի անառակ որդու, իր քէֆին թողեց ու ինքը սպասեց բանի վերջին, նրանց դարձ գալուն: Բայց ի՞նչ դարձ կը գային նրանք: Մարդ մէկ անգամ ուղիղ ճանապարհը թողած՝ չծռուի, թէ չէ, որ ծռուեց՝ էլ աշխարհքը վրա՛յ գայ, չի՛ կարող դրստել նրան: Բայց Աստծու համբերութիւնը շա՛տ է: Մովսէս մարգարէից սկսած՝ 1500 տարի շարունակ, մէկը միւսի ետևից մարգարէներ էր ուղարկում, որ էդ ծռուած հրէայ ազգին մի ուղիղ ճանապարհի բերի:

Բայց հրեայ ազգը իր օրը վայելչութիւնների և ուրախ կերուխումի մէջ անց կացնելով՝ ականջները դադարել էին մարգարէների խրատող ու զգուշացնող խօսքերը լսելուց: Աստուած շա՛տ ու շատ անգամ պատժել ու պատուհասել էր էդ ազգին, որ ստահակ երեխայի պէս իր ուզածն էր անում, ո՛չ մի խրատի ականջ չէր դնում ու բոլորովին մոռացել էր էն Աստծուն, որ՝ իր աստուածային ամենակարող թևերի վրայ անց էր կացրել նրան հազարաւոր փորձանքների վրայից, ազատել էր նրան կրակի ու ջրի միջից և հասցրել էր իր բունը, իր հայրենի տունը, որտեղ դաշտերը կաթնո՛վ էր լիքը, այգիները՝ մեղրով:

Ահա՛ էդ ծանր ժամանակը, երբ մարդիկ մինչև վիզները մեղքի մէջ էին խրուած, երբ մարգարէների բողազները պատռուել, ձէները կտրուել էր՝ դուրս եկավ ժողովրդի միջից մի նոր մարգարէ: Դա էր մարգարէներից վերջինը: Դա, իր գլուխը հեռացնելով էն քաղաքներից, որոնց փողոցները դեռ ներկուած էին մարգարէների արիւնով, քաշուել գնացել էր անբնակ անապատը՝ Հրէաստանի չոր, անպտուղ, անջուր և աւազոտ դաշտավայրը. Հեռո՛ւ մեծ

քաղաքներից, հեռու Երուսաղէմից, հեռու նրա տաճարից: Ինչի՞. որ հենց արտաքին կերպով աւելի լա՛ւ հասկացնի ժողովրդին իրանց սրտերի ու կեանքի ներքին անապատը, որ ցոյց տայ թէ՝ ինչպէս էն անապա՛տն է դատարկ, էնպէս էլ նրանց սրտերն են դատարկ:

«Դա՛րձ եկէք ձեր մեղքերից, աղաղակում էր վերջին մարգարէն, դա՛րձ եկէք, որովհետև մօտեցել է երկնքի արքայութիւնը, գալիս է երկնքի Թագաւորը»:

Էդ մարգարէն Յովհաննէսն էր, որ Քրիստոսից վեց ամսով առաջ էր աշխարհ եկել՝ նրա ճանապարհը պատրաստելու համար:

Ի՞նչպէս պէտք է պատրաստէր: Ի՛նչպէս են պատրաստում մի քաղաք, երբ իմանում են թագաւորի գալուստը: Օրերով, շաբաթներով ու ամիսներով առաջ՝ քաղաքի բնակիչները, երբ լսում են թագաւորի գալու համբաւը, սկսում են իրա՜նց պատրաստութիւնները տեսնել: Մեծ, բանուկ ճանապարհների վրայ էլած հին ու մին շինութիւնները նորոգում են, կարկատելու տե-ղերը կարկատում են, ներկելու տեղերը ներկում, փողոցները քարում, ջրում, աւլում, մաքրում. խանութները և փողոցների վրայ էլած տները զարդարում են ինչո՛վ որ կարողանում են:

Հապա ի՞նչպէսի պատրաստութիւն պէտք է տեսնէին հրէաները, որոնց մօտ գալու էր շուտով ո՛չ թէ մի սովորական թագաւոր, ո՛չ թէ ժողովուրդների՛ թագաւոր, այլ թագաւորների՛ թագաւորը, երկնային Թագաւորը: Բայց երկնային Թագաւորը երկրների ու քա-ղաքների թագաւոր չէ, չէ՞ որ նա ինքն է ստեղծել բոլոր ծովն ու ցամաքը: Բոլոր ծովերը նրա համար մի ափ ջուր են, բոլոր ցամաքը՝ մի թիզ հո՛ղ: Ոչ. Նա, մեր Տէր Յիսուս Քրիստոսը աշխարհների ու ազգերի թագաւորը չէ՛ր. նա մարդկանց սրտերի թագաւորն էր. նա ուզում էր իր գահի ոտքերը մարդկանց սրտերի վրա՛յ դնել: Ինչի՞. որովհետև, երբ մարդու սիրտը ձեռքիդ է, էն ժամանակը ողջ մարդը քո կամքի գերին է: Եւ երբ Յովհաննէսը անապատում կանգնած՝ աղաղակում էր. «Դա՛րձ եկէք ձեր մեղքերից», ուզում էր ասել՝ «Մաքրեցէ՛ք, սրբեցէք, պատրաստեցէք ձեր սրտե՛րը»:

Մարգարէի որոտացող ձայնը, նրա՝ սրտեր ցնցող աղաղակը դուրս բերեց հրէաներին իրանց քաղաքներից ու գիւղերից: Մարդիկ դուրս էին գնում անապատը, տեսնում էին Յովհաննէսին. միտքերն էին բերում նրա հրաշալի ծնունդը, որի համբաւը Հրէաստանի մի ծայրից միւս ծայրն էր հասել: Չէ՞ որ Յովհաննէսը անորդի

ծնողների զաւակ էր, հրեշտակի խոստացա՛ծն էր, իր (Զաքարիա)
քահանայ հօր աղօթքի մէջ ստացուա՛ծն էր: Նրա մօտ եկողներից
շատերը լա՛ւ էին յիշում, որ մօտ տասն ամիս խուլ ու համր
մնացած հօր լեզուն՝ Յովհաննէսին թլպատելու, անուն դնելու օ՛րը
բացուեց, «Յովհաննէս» խօսքը ասելու րոպէին բացուեց:

Գալիս էին մարդիկ, տեսնում էին մի լերկ քարանձաւ, մի ծակ
քարափ իր համար տուն ու աղօթատուն շինած Յովհաննէսին:
Տեսնում էին նրա՝ թաղիքից (ուղտի բրդից) շինած կոշտ
վերարկուն, կաշուէ գօտիկը մէջքին կապած. տեսնում էին նրա
պարզ ու աղքատիկ կերակուրը. այն է՝ անապատում բազմութեամբ
վէր եկած մանր մորեխը, որ նա, ինչպէս և ուրիշ շատ չքաւոր
հրէաներ, հաւաքում, արևի տակ չորացնում, աղում էր, փոշի
շինում, և դաշտի մեղուների պատրաստած, քարափների
ծերպերումը պահած դառնահամ մեղրի հետ խառնելով ուտում էր.
տեսնում էր ժողովուրդը էս բոլորը, տեսնում էր և խոնարհում
նրա առաջը, ինչպէս երկնքից իջած մարմնաւոր հրեշտակի առաջը:

Երբ Յովհաննէսը նկատեց, որ ժողովուրդը գունդ գունդ գալիս
է իր մօտ ամէն կողմերից, երբ նա տեսաւ, որ իր ձայնը տեղ է
հասնում և իր խօսքերը անօգուտ չեն անցնում, նա անապատը
թողնելով՝ քաշուեց գնաց դէպի Յորդանան գետը: Էդ Յորդանան
անունով փոքրիկ գետը երկրի հիւսիսային սարերից բղխելով՝
քչքչալով վազում է դէպի հարաւ, և ճանապարհին երկու տեղ
լճակներ կազմելով, թափւում է մի մեծ լիճ, որի անունն է Մեռեալ
ծով: Աւելորդ չի՛ լինի, կարծեմ, եթէ էստեղ մի քանի խօսք ասեմ
էդ Մեռեալ ծովի մասին:

Դեռ Յիսուս Քրիստոսի ծնուելուց շա՛տ առաջ. Յորդանան
գետի և Մեռեալ ծովի մօտերքում կար երկու քաղաք՝ Սոդոմ և
Գոմոր: Էս քաղաքների հողը, որ ջրւում էր Յորդանանի ջրերով,
աստուածատունկ դրախտի նման պարարտ ու շատ պտղաբեր հող
էր. բայց բնակիչները շատ չարագործ ու մեղաւոր մարդիկ էին.
էնպէս որ հայր Աբրահամի ժամանակը ամբողջ Սոդոմում տասը
արժանաւոր, արդար մարդ չկար: Նրանք մեծով փոքրով անառակ
մարդիկ էին: Վերջը, երբ Աստծու համբերութեան չափն անցաւ,
երկնքից հրեղէն անձրև թափուեցաւ, ծծումբ ու կրակ իջաւ նրանց
վրայ, և տարաբախտ քաղաքը թաղուեցաւ մոխրի կոյտերի տակը:

Հիմա էդ երկիրը նման է մի մերկ անապատի, որի մէջտեղը
դրուած է Մեռեալ ծովը: Էստեղ մարդկային բնակարան չկայ.
միայն սև ու մութ, լերկ ու մերկ բլուրնե՛ր են երևում էստեղ,

որտեղ մի ժամանակ փարթամանում էին մարդաշատ քաղաքներ իրենց սևահող դաշտերով և կանաչատերև անտառներով: Էստեղ ո՛չ մի ճանճ չէ բզզում, ո՛չ մի խոտ չէ բսնում:

Մեռեալ ծովը աշխարհիս երեսին ամենացած ծովն է: Նրա դառն ու աղի, բայց թափանցիկ ջրի մէջ ձուկ չկայ: Ներսը մեռած, դուրսը մեռած, էս պատճառով անունն էլ դրել են Մեռած ծով: Հէնց որ ձուկը Յորդանանի ջրերից լողում է էս կողմը, իսկոյն սատկում է: Մի՛ խօսքով՝ էս ծովը Յորդանանի ձկների գերեզմանն է: Սրա ջրի մէջ լողալու համար մտած մարդը՝ դուրս է բերում իր մարմնի վրայ աղի ու իւղի հաստ շերտեր: Երկաթը նրա մէջ ընկնելուն պէս ժանգոտւում է: Երկրաշարժի ժամանակ ծովի խորքից լեռնային ձիւթի աղբիւրներ են բղխում: Բայց ամենից զարմանալին էն է, որ սրա մէջը մարդ չէ՛ կարողանում ջրի տակն անել, ուրեմն, սա մէկ էնպէսի ծով է, որ մէջն ընկնողը ուզենայ էլ, չի՛ կարող խեղդուել: Ջուրն էնքան թանձր ու ծանր է, որ մարդ չի կարողանում մէջը կանգնել, ձեռքերը դժուարութեամբ են ճեղքում ջուրը, իսկ ոտքերը լողում են ջրի երեսին: Յովհաննէսը անապատից քաշուելով՝ եկել էր Յորդանանի ափը, էնտեղ, որտեղ նա Մեռեալ ծովն էր թափւում:

Ո՛վ որ զարթում էր իր թմրութիւնից, ով որ երկնային Թագաւորի համար տեղ էր պատրաստում իր սրտումը, ով որ վճռում էր թողնել մեղքերի ճանապարհը, նրան Յովհաննէսը կանգնեցնում էր Յորդանանի մէջ և ջրով մկրտում էր: Էդ ժամանակից ու էդ պատճառով նրան ասում են Յովհաննէս Մկրտիչ, այսինքն՝ մկրտող Յովհաննէս: Յովհաննէսի միտքն ի՞նչ էր արդեօք, որ մկրտում էր ժողովրդին: Նա դրանով ուզում էր հասկացնել նրանց, թէ «Ի՛նչպէս որ ես դրսի՛ց եմ մաքրում ձեզ, էնպէս էլ դուք ներսի՛ց մաքրեցէք ձեր սրտերը, որ կարողանաք, ինչպէս հարկն է, ընդունել ինձնից Մեծին, որի կօշիկների կապերը յետ անելուն էլ արժանի չեմ ես»:

Յովհաննէսի ճգնաւորական սուրբ կեանքը և նրա ցոյց տուած մեծ խոնարհութիւնը տեսնողները մնացել էին հիացած: Բայց ի՛նչ էր Յովհաննէսը՝ Քրիստոսի հետ համեմատելով: Նա Նրա ճանապարհը պատրաստո՛ղն էր միայն: Քրիստոս արեգա՛կն էր, որ պէտք է ծագէր, գար մարդկանց խաւար մտքերը լուսաւորելու, նրանց սառած սրտերը տաքացնելու համար: Իսկ Յովհաննէսը Արուսեա՛կն էր, առաւօտեան արշալուսի ա՛ստղն էր, որ երբ լուսադեմին երկնքի բոլոր աստղերը մէկը միւսի ետևից հանգչում

մայր են մտնում, մնում է մէնմէնակ երկնակամարում շողշողալով, հասկացնելով որ շուտով իրանից յետոյ գալու է աստղերի Թագաւորը՝ վառվռուն կրակ ու բոց արեգակը:

Քրիստոս դեռ աշխարհ չեկած, մարգարէները 1500 տարի Նրա մասին էին խօսում. իրանց սաղմոսների ու քարոզածների մէջ Նրան էին նկարում, նկարագրում. մէկի պակաս թողած տեղը մի՛ւսն էր լրացնում թամամացնում: Իսկ ամենքը միասին Նրա գովասանքու՛մն էին: Սուրբ Հոգին էն շնորհքն էր տուել նրանց, որ նրանք խօսում էին էն բանի մասին, ինչ որ հարիւր, հինգ հարիւր, մինչ անգամ հա՛զար տարուց յե՛տոյ պէտք է պատահէր, երբ ո՛չ իրանք կը լինէին, ոչ էլ իրանց թո՛ռը կլինէր աշխարհքումս: Ի՛նչ որ մենք մարմնաւոր աչքով չենք կարող տեսնել մի՛ վերստ հեռաւորութեան վրայ, էն նրանք հոգևոր աչքով տեսնում էին միլիոնաւո՛ր վերստի վրայ: Մենք մեր առջևը դրուած հայելիի մէջ էնպէս պարզ չե՛նք կարող տեսնել մեր պատկերը, ինչպէս որ նրանք իրանց հոգու՛ հայելիի մէջ տեսնում էին հարիւրաւոր տարիներից յետոյ աշխարհք գալու Քրիստոսի պատկերը:

Բայց ի՞նչ կ՚ասէք, եթե ասեմ, որ Յովհաննէսը, որ Քրիստոսից միայն վեց ամսո՛վ էր առաջ աշխարհք եկած, էն բոլոր մարգարէներից մեծն էր: Քրիստոս արդեն եկած էր, աշխարհքումս էր, երբ որ Յովհաննէսը քարոզում էր Նրա մասին, իսկ միւս մարգարէները Քրիստոսի մասին դեռ Նրա ծնուելուց հարիւրաւո՛ր տարիներ առա՛ջ էին քարոզել՝ չէ՞ որ նրա՛նք աւելի մեծ պէտք է լինէին Յովհաննէսից: Բայց Յովհաննէսն էր մեծ: Ինչի՞. որովհետև, թէպէտ նրանք ամենքը Քրիստոսին շատ պարզ էին նկարագրել իրանց խօսքերի մեջ, բայց նրանցից ոչ մէկը չարժանացաւ Նրան մարմնաւոր աչքով տեսնելուն: Իսկ Յովհաննէսը ոչ միայն տեսաւ Քրիստոսին, այլ Նրան մկրտեց էլ: Յովհաննէսը միւս բոլոր մարգարէներից մէկ էլ նրանով էր մեծ, որ իր մօր արգանդումն էլած ժամանակը լցուեց Սուրբ Հոգով:

Նայեցէ՛ք, ուրեմն, սրա մեծութեանը, նայեցէք յետոյ սրա փոքրութեա՛նն էլ: «Ես ասում է, ինձնից յետոյ Եկողի ոտքի հո՛ղն եմ: Ես արժանի չեմ, ասում է, Նրա կօշիկների կապե՛րը յետ անելուն»: Ա՛յ օրհնուած հոգի, դու որ Նրա կօշկի կապերը յետ անելուն էլ արժանի չես, դու՛. հապա մե՞նք, մենք յայտնի մեղաւորներս ի՛նչ գլուխներս քարովը տանք, մենք, որ քո մատի ղունգին էլ արժանի չենք. մենք ի՛նչպէս պէտք է երևանք էդ Եկողի աչքին: Դու՛, որ դեռ մօրդ արգանդումը էլած ժամանակը Սուրբ Հոգով լցուեցար՝ արժանի չես, հապա մենք, մենք ողորմելիներս, որ մեր ամբողջ կեանքումն էլ Սուրբ Հոգու ինչ լինելն էլ չենք իմացել ու չենք զգացել, մե՞նք ինչին

ենք արժանի: Դու՛, որ Քրիստոսին մկրտելուց յետոյ էլ չկարողացար վայելել Նրա ամենաքաղցր տեսութիւնը և արժանի չես Նրան, Հապա մենք, որ ամէն անգամ ճաշակուելիս, ամէն անգամ Նրա պատուական Արիւնին ու Մարմնին հաղորդուելիս ամբողջ Քրիստոսին ենք ընդունում մեր մէջը, մե՞նք ինչին ենք արժանի: Դու՛, որ Նրան մկրտեցիր ու Նրան արժանի չես. Հապա մե՞նք, որ մեր անարժան ճաշակուելովը նորից խաչում ենք Նրան, մե՞նք ինչին ենք արժանի: Մեր արժանաւորութի՞ւնն ասեմ. մենք արժանի չենք քո՛ կօշկի կապերը յետ անելուն, մե՛նք, որ դեռ էս օ՛ր էլ չէնք կարողացել մեր սրտերը պատրաստել ո՛չ թէ Քրիստոսին ընդունելու, այլ Նրա քարոզած հարիւր խօսքից մէկին տեղ տալու համար:

## Բ.

Բայց ո՞րտեղ էր էդ ժամանակը Քրիստոս և ի՞նչ էր շինում: Նա մեծանում էր իր ծնողների՝ սուրբ Կոյս Մարիամի և սուրբ Յովսէփի տանը, Նազարէթ քաղաքում: Նազարէթը, որ հիմա Նասրա էլ է ասում, շինուած էր Պաղեստինէի մի պտղաբեր անկիւնում: Էս քաղաքի ամենամեծ փառքն ու պարծանքն էն էր, որ մեր Տէր Յիսուս Քրիստոսը մինչև 30 տարեկան դառնալը Նրա մէջ բնակեց: Նազարէթը հիմա մի խեղճ գիւղաքաղաք է. 3000-ի չափ բնակիչ ունի՝ ասորի, յոյն և թուրք: Նազարէթում կայ մի եկեղեցի, որտեղ բնակելիս է եղել ս. Կոյս Աստուածածինը: Մի մարմարիոնեայ լայն ու փառաւոր սանդուխքով ուխտաւորները իջնում են էնտեղ, որտեղ, ինչպէս ասում են, կանգնած էր ամենասուրբ Կոյսը՝ հրեշտակից աւետիք ստանալու ժամանակը: Էն տեղի վրայ մի սեղան է շինուած և վրէն գիշեր ցերեկ կանթեղներ են վառւում: Նրա կողքին, մէկ ուրիշ մարմարիոնեայ սեղանի վրայ մեծ մեծ տառերով դրուած է էս լատիներէն խօսքը. «Verbum caro hic factum est»— «Բանն մարմին ա՛ստ եղև» այսինքն՝ Քրիստոս էստե՛ղ մարմնացաւ:

Յիսուս Քրիստոս մեծանում էր էս Նազարէթ քաղաքում լուռ ու մունջ և զարդանում էր Սուրբ Հոգով: Նա իրան պահում էր անյայտութեան մէջ: Նա չէր երևում ժողովրդի մէջ իբրև Աստծու Որդի. Նա, մարդացած Աստուածը՝ մարդուս նուաստ կերպարանքն առած, ապրում էր խաղաղութեամբ, առանց իր աստուածային շնորհքները մարդկանց ցոյց տալու:

Բայց ահա՛, երբ մարդկային ազգի փրկելու ժամն ու ժամանակը մոտեցաւ, երբ աշխարհքը, հրէից ազգը Քրիստոսին ընդունելու համար՝ գնում էր Յովհաննէսից մկրտուելու, էդ ժամանակը Քրիստոս էլ Նազարէթից ճանապարհ ընկաւ դէպի Յորդանան գետը՝ Յովհաննէսից մկրտուելու: Իսկ Նազարէթից մինչև Յորդանանի էն տեղը, որտեղ Յովհաննէսը մկրտում էր ժողովրդին, երեք օրուայ ճանապարհ էր, հիւսիսից դէպի հարաւ:

Հիմա է՛ս ասենք, սի՛րելիս. ամէն մարդ Յովհաննէսից մկրտւում էր՝ իր սիրտը մաքրելու համար, Քրիստոսին ընդունելու համար. Քրիստոս ինչի՞ համար էր մկրտւում: Չէ՞ որ Նրա սիրտը միշտ մաքուր էր, չէ՞ որ Նա մարդկանց սրտերը քննող, սրտագէտ Աստուածն էր, որ մարմնացել՝ մա՛րդ էր դառել: Նա կարօտ չէր իր սիրտը մաքրելու և մանաւանդ՝ Նա ոչ ոքի չէր պատրաստւում ընդունելու: Էլ ինչի՞ էր մկրտւում: Է՛դ է պատճառը, որ երբ Յովհաննէսը տեսաւ Քրիստոսին ժողովրդի միջից իր մօտ գալիս, Սուրբ Հոգու ցոյց տալովը ճանաչեց Նրան և ձայն տուեց. «Ե՛ս պէտք է գամ Քեզնից մկրտուելու. Դու ի՞նձ մօտ ես դալիս: Ես էս բոլոր ժողովրդով պէտք է գամ Քո ոտքերն ընկնեմ. Դու ի՞նձ մօտ ես գալիս: Ես իմ ժողովրդով պէտք է դամ քեզ մօտ, որ մեր գերութեան շղթաները խորտակես. Դու ի՞նձ մօտ ես դալիս»: «Թո՛ղ էդ խօսքերը, պատասխանում է Քրիստոս. Թո՛ղ իմ մեծութիւնն ու քո փոքրութիւնը. մենք էսպէ՛ս պէտք է կատարենք ամէն օրէնք, ամէն արդարութիւն. Թո՛ղ որ Ե՛ս մկրտուեմ քեզնից»:

Եւ ճշմարի՛տ, տեսնենք Քրիստոս կատարե՞լ է հրէաների օրէնքները, թէ ո՛չ: Ինչպէս չէր կատարի, քանի որ ինքն էր ասում. «Ես ո՛չ թէ նրա համար եմ աշխարհք եկել, որ աշխարհքի օրէնքները քանդեմ, այլ եկել եմ, որ էլած օրէնքների պակասը լրացնեմ, թամամացնեմ»: Էդպէս էլ արել էր և անում էր:

Ութ օրական էլած ժամանակը հրէաների օրենքով Քրիստոս թլփատուեցաւ Բեթլեհէմ քաղաքի այրումը, էն փուչ քարափումը, որտեղ ինքը ծնուել էր և ծնողները դրին Նրան հրեշտակի ասած անունը՝ Յիսուս, որ և կոչուեցաւ Քրիստոս: «Յիսուս» հրէարէն բառ է, նշանակում է «Փրկիչ». «Քրիստոս» յունարէն բառ է, նշանակում է «Օծեալ» կամ հրէարէն՝ «Մեսիայ»: Թլփատութեան օրէնքը Աստուա՛ծ էր տուել հայր Աբրահամին՝ էն ժամանակուայ կռապաշտներից զանազանելու համար. որովհետև Քրիստոս Աբրահամի սերունդից պէտք է ծնուէր:

Քառասուն օրական դառած ժամանակը ծնողները Յիսուսին Բեթլեհէմից տարան Երուսաղէմ քաղաքը, որ երկու ժամուայ

ճանապարհ էր, էնակ, տաճարումը Աստծուն ընծայելու համար: Էս օրէնքն էլ Աստուա՛ծ էր տուել Հրէից ազգին՝ նրանց անդրանիկ կամ առջինեկ որդիքը Եգիպտոս անունով կռապաշտ երկրի կոտորածից ազատելու յիշատակի համար: Հրէաները, եթէ իրանց անդրանիկ որդին տղա՛յ էր, տանում էին Երուսաղեմի տաճարը քառասու՛ններորդ օրը. իսկ եթէ աղջիկ էր, նրան տանում էին ութսուններորդ օրը:

Երեսուն տարեկան դառած ժամանակը, երբ բոլոր Հրէաները գնում էին Յովհաննէսից մկրտուելու, Քրիստո՛ս էլ գնաց նոյնպէս մկրտուելու:

Բայց Քրիստոսի մկրտուելու պատճառը միայն օրէնքը կատարելը չէր: Նա իր մկրտուելովը մի մեծ դա՛ս էր ուզում տալ աշխարհքին: Մէկ էնպէսի դաս, որ շատ հարկաւոր էր թէ էն ժամանակուայ և թէ մեր ժամանակուայ մարդկանցը: Հպարտացած, գոռոզացած աշխարհքին, որ է՛լ չէր ճանաչում իր ստեղծող Աստծուն, ի՞նչ աւելի մեծ դաս էր հարկաւոր, եթէ ո՛չ՝ խոնարհութի՛ւն: Մեր էս ժամանակուայ քիթը վեր տնկած հպարտներին, որոնք մեծ ու փոքր չեն ճանաչում, ի՞նչ աւելի մեծ դաս է հարկաւոր տալ, եթէ ո՛չ՝ նոյն խոնարհութիւնը:

Եւ Քրիստոս խոնարհութիւնը միայն մկրտուելովը չէ ցոյց տուել. Նա խոնարհութիւնը ցոյց է տուել ամէն բանում՝ իր ծնուելուց մինչև մահը: Նրա ամբողջ կեանքը խոնարհութիւն էր: Քրիստոս երկնքի անհատանելի բարձրութիւնից խոնարհեց, երկի՛ր եկաւ: Քրիստոս իր երկնային թագաւորութիւնը թողեց, իր Հօր ծոցը թողեց՝ Բեթլեհէմի մսու՛րը մտաւ: Նա հրեշտակներից ու հրեշտակապետներից փառաբանուիլը թողեց՝ եկաւ հողեղէն մարդկանց մէջ մտաւ, ծեծ, ապտակ և թուք ու մուր ստացաւ՝ միմիայն մեր փրկութեան համար: Նա կարող էր ծնուել մի թագաւորական պալատում, բայց ծնուեցաւ ոչխարների այրումը: Նա լինելով Աստուած՝ եկել է մկրտուելու մարդուց: Նա իր գլուխը խոնարհեցնում է իր ստեղծած մարդու ձեռքի տակը: Իր մատնութեան երեկոյին էլ Նա մի և նոյն դասը տուեց իր աշակերտներին, և նրանցով ամբողջ աշխարհքին: Ուսուցիչը, Տէրը, Աստուա՛ծը՝ խոնարհեց աշակերտների, ծառա՛ների, մարդկանց ոտքերը լուաց: Վերջապէս, ի՞նչ աւելի մեծ խոնարհութիւն կարող է լինել քան թէ այն՝ որ Աստուած մա՛րդ դառաւ:

Բայց մեզանում, մեր ժամակներում ի՞նչ ենք տեսնում: Մեզանում խոնարհութիւն ասուած բանը շատ դըժուար ճարելու բան է: Ո՛վ մի քիչ բան է սովորել, ո՛վ ուսման հա՛ց է առել, էլ նրա հետ խօսել չէ լինում: Հպարտութիւնից իրանք իրանց կաշուումը չեն տեղաւորւում: Շա՛տ լաւ է ասել մի խելօք մարդ, թէ՝ «Հպարտութիւնը հոգու աչքացաւութիւն է, էդ պատճառով հպարտի աչքին ուրիշ մարդիկ

մանր են երևում»: Այսինքն՝ ինչպէս որ աչքացաւ ունեցող մարդը ուրիշներին պարզ չէ կարողանում տեսնել, այլ խաւար տեսնելով ամբողջ մարդը չէ երևում իր աչքին, ինչպէս որ կայ, ինչպէս էլ հպարտ մարդն է տեսնում: Նրա էլ հո՛գու աչքն է ցաւում. էդ պատճառով ուրիշ մարդիկ, ինչքան էլ երևելի ըլեն, էլի նրա աչքումը շատ փոքր ու աննշան են երևում: Հազարից մի՛ օրինակ առեմ:

Ասենք թէ բարձր ուսում առած մարդը միջակ ուսման տէր մարդու հանդիպելիս՝ քիթը վե՛ր է տնկում. ասենք թէ հազար հազարների տէր հարուստը մի խեղճ մարդու աչքը աչքին գցելուց հեռու է փախչում. իրար քիչ ու շատ հաւասար մարդիկ ի՞նչպէս են վարւում: Միմեանց հանդիպելիս դրանցից ամէն մէկը սպասում է որ առաջ դիմացի եկո՛ղը իրան բարևի, որ յետոյ ի՛նքը պատասխանի: Ողորմելինե՛ր. կարծում են թէ՝ եթէ առաջ ի՛րանք բարևեն, ի՛րանք գլխարկ վեր առնեն, դրանով շա՛տ կը փոքրանան, իսկ եթէ առաջ ու՛րիշը բարևի, իրանք շա՛տ կը մեծանան:

Չէ, սի՛րելիս, խոնարհութիւնը դիտութիւն ու տգիտութիւն չէ հարցնում, հարստութիւն ու խեղճութիւն չէ՛ հարցնում: Ընդհակառակը, տեսար որ դիմացիդ եկողը քեզ ծանօթ է, շտապի՛ր, առաջ դու՛ բարևի՛ր, է՛լ մի մտածիր, մի՛ հաշուիր թէ՝ նա՛ աւելի շատ ուսում կամ շատ փող ունի՝ թէ դու: Ինքը Քրիստոս, որ երկուսիդ մէջը ոչինչ զանազանութիւն չէ՛ դնում, դուք ի՛նչ էք ձեզ չափում ու չափչփում: Քրիստոս խոնարհեց՝ ձեզ երկուսի՛դ էլ գլորուած սուլից ո՛տքի կանգնեցրեց. էլ չմտածեց թէ՝ տեսնեմ սա՞ է լաւը, թէ նա. սա՞ է արժանի, թէ նա: Դուք ի՛նչ էք մանր մունր հաշիւների մէջ մտնում: Օ՛րհնած, խոնարհելով խօ մէջքդ չի՛ կոտրուի. Աստծու բարևն ես տալի՛ս, մի մարդավա՛րի տուր, մի լիասիրտ, մի բաց ճակա՛տով տուր, որ մարդու էլ դուր գայ, Աստծուն էլ, է՛: Ի՛նչ է, դու վերի արտի ցորենն ե՞ս, դու ոսկեղէն ես, նա հողեղէ՞ն. երկուսդ էլ էն մի և նոյն կաւից չէք ստեղծուա՞ծ: Արդէն քիթդ վեր տնկելդ ցո՛յց է տալիս, որ դու շա՛տ էլ խելօք չես: Խելօք մարդը խոնա՛րհ կ՛ըլի: Նայիր արտերի՛ն: Ինչ հասկ որ դա՛տարկ է, գլուխը վե՛ր է տնկել, ի՛նչ հասկ որ հատիկներով լի՛քն է, ծանրութիւնից գլուխը կա՛խ է գցել: Աշխարհքը մի բա՛ց գիրք է, կարդա՛, էլ ի՛նչ:

Քրիստոս իր ժամանակուայ հպարտութիւնը տեսնելո՛վ էս իմաստալից խօսքն ասեց. «Ով որ, ասում է, իրան խոնարհեցնում է, նա կը բարձրանայ, ով որ իրան բարձրացնում է, նա կը խոնարհի»: Կարելի է, դու ասես թէ՝ «Ո՛չ, մենք էս աշխարհքում դրա հակառա՛կն ենք տեսնում. հպարտները բարձրանում, մեծ փառքի են տիրանում, իսկ

խոնարհները ցածրանում, ոտքի տակ են կորչում»:

Սխալւում ես. թէ՛ հպարտի բարձրանալը, թէ՛ խոնարհի ցածրանալը ժամանակաւոր է. մի՛ տարի, հինգ տարի, տասը տարի. վերջը հպարտը ընկնում է, իր ունեցած անունն էլ, փառքն էլ, հարստութիւնն էլ ձեռքից գնում է և մի ժամանակ օդումը թռչող, երկրի վրայ չտեղաւորուող հպարտը փորի վրայ է սողում, մարդկանց ոտքերի տա՛կն է ընկնում: Հպարտութիւնից չէ թէ մենակ մարդիկ, այլ և քաղաքներ են կործանուել, գահե՛ր են խորտակուել: Հպարտութի՛ւնն էր պատճառը, որ մի դաս հրեշտակ՝ իր ունեցածովը չբաւականանալով, Աստծու փառքին նախանձելով ասեց. «Կը դնեմ աթոռս ամպերում և կը նմանուեմ բարձրեալին՝ Աստծուն. ես էլ երկրպագութիւն կը ստանամ ուրիշներից»: Բայց դեռ նո՛ր էր էդ միտքը գլխովն անց կացրել, որ ինքը իր աթոռով երկնքի բարձրութիւնից ընկաւ երկրի խորքը հրեշտակ անունից զրկուեց՝ սատանա՛յ կոչուեց: Էդպէ՛ս էլ խոնարհ մարդու վիճակն է: Իր չափը ճանաչելով, միշտ իրան ուրիշներից փոքր ու ցած համարելով՝ մի՛ տարի, հինգ տարի, տասը տարի չէ ճանաչւում մարդկանցից, վերջը, երբ մէկ ճանաչւում է, նրա արժանաւորութիւնը գին է դրւում, էն ժամանակը ուրիշնե՛րն են նրան բարձրացնում, անյայտ պաշտօնից մի յայտնի պաշտօնի, աննշան գործից մի նշանաւոր գործի են կանգնեցնում: Եւ շա՛տ է պատահում, որ էդպէսի խոնարհ մարդիկ ամբողջ երկրի կառավարի՛չ են ընտրւում, ողջ տէրութեան ղեկը իրանց ձե՛ռքն են առնում և էն բարձրութեան մէջը՝ իրանց կորցնելու, գոռոզանալու փոխանակ՝ աւելի խոնարհ են պահում իրանց: Եւ էսպէս, մեր Տէր Յիսուս Քրիստոսի ասած մարգարտաշար խօսքը միշտ և հանապազ ուղղւում է, որովհետև ինքն է ասել. «Երկինքն ու երկիրն էլ կ՚անցնեն, կը վերջանան, բայց իմ խօսքերը չե՛ն մնայ անկատար, բո՛լորը կը կատարուեն»:

Եթէ Քրիստոս իբրև մեծ ու ամենամեծ՝ խոնարհւում է փոքրին, հապա հաւատարը հաւատարին, մա՛նաւանդ փո՛քրը մեծին ի՛նչքան պէտք է խոնարհի: Երբ մեծը փոքրին խոնարհութիւն է ցոյց տալիս, փոքրը է՛լ չպէտք է իմանայ, թէ մեծին ի՞նչպէս խոնարհի, նրան ուղղակի իր գլխին պէտք է նստեցնի: Հէնց ինքը Յովհաննէս Մկրտիչը, որ իրան Քրիստոսի կօշկի կապերը յետ անելուն է՛լ արժան չհամարեց, իրան էդպէսով խոնարհեցնելով Նրա ոտքերի տակը, էն խոնարհութիւնով բարձրացաւ Նրա գլու՛խը, որ և մկրտեց, ինչպէս ձեռնադրող:

## Գ.

*Յովհաննէսը, թէպէտ գիտէր, որ Քրիստոս աշխարհք է եկած և իր ժողովրդի մէջն է. բայց ինքը Նրան չէր տեսել: Միայն էս անգամ նա Սուրբ Հոգով ճանաչեց Նրան և ձայն տուեց. «Ահա՛ Աստծու Գառը, որ պէտք է մաքրի, վերացնի աշխարհքի մեղքերը»: Յովհաննէսը հէնց դրա համա՛ր էր աշխարհք եկել, որ մատո՛վ ցոյց տայ ժողովրդին իր Փրկիչը. էն Փրկիչը, որի աշխարհք գալու մասին ինքը և իրանից հարիւրաւոր տարիներ առաջ ուրիշ շատ մարգարէներ խօսել էին: Քրիստոսի գալովը Յովհաննէսը յետ քաշուեց, ինչպէս երկնքի ամենավերջին աստղը, որ մայր է մտնում արևի ծագելու ժամանակը: Ժողովրդին հասկացնելու համար, որ ինքն արդէն իր պարտքը, իր պաշտօնը կատարել վերջացրել է և հիմա գործելու ասպարէզը մնում է Քրիստոսին, միւս օրը ասեց ժողովրդին էս վերջին խօսքերը. «Սրանից յետոյ Սա պէտք է զօրանայ, իսկ ես հանգստանամ. Սրա փառքը պէտք է աճի, փռուի, իսկ իմ փառքը նուազի, թառամի»:*

*Յովհաննէսից մկրտուելուց յետոյ՝ Քրիստոս շուտով դուրս է գալիս ջրից և գետի ափումը կանգնած՝ աղօթում է: Շտապով դուրս գալովը Նա իր անմեղ ու անարատ լինե՛լն էր ուզում ցոյց տալ: Նա դուրս է գալիս ջրից՝ դուրս գալով մի և նոյն ժամանակը հրէական հին օրէնքների, հին կարգ ու կանոնների միջից և ոտքը դնում է իրանով սկսուող նո՛ր օրէնքների, նո՛ր կարգ ու կանոնների սահմանը: Դուրս գալով ջրից դէպի ցամաքը, Նա շարժական, փոփոխական կեանքից՝ ոտքը դնում է կայուն և հաստատուն կեանքի սահմանը: Ի՛նչպէս մի հաստ ու թանձր վարագուրով՝ Նա ծածկում է անցեալը, էն խաւա՛ր անցեալը, որի մէջ ամէն բան իր ճանապարհն էր պատրաստում: Եւ գետի ափումը կանգնած՝ Նա աղօթում է. աղօթում է իր Հօրը, որ յաջողի Իրան Իր նոր ու մեծ գործը, մարդկային ազգի փրկութեան գործը: Բայց Նա էդ փրկութիւնը պէտք է ձեռք բերէր պատերազմո՛վ. Նա պէտք է պատերազմէր սատանայի՛ դէմ, մարդկանց կրքերի ու մոլութիւնների՛ դէմ:*

*Բայց մի՞թէ Նրա մկրտութիւնն էլ ուրիշ, հազարաւոր մարդկանց մկրութեան պէս հասարակ, աննշա՛ն պէտք է անցնէր: Միթէ՞ ո՛չ մի նշանից չպէտք է երևար, որ էդ վերջին մկտրուողը մա՛րդ է և Աստուած, որ Նա Աստուածամա՛րդ է: Ի հա՛րկէ, չէր կարող աննշան անցնել. ինչպէս աննշան չէին անց կացել Նրա երկրաւոր կեանքի առաջին երկու քայլերը՝ Նրա ծնունդն ու քառասնօրեայ տաճար գալուստը:*

*Նրա ծնուած ժամանակը, կէս գիշերին երկնքից Հրեշտակնե՛ր ցած եկան. Նրանցից մէկը աւետիս տուեց աշխարհքին, իսկ ամենքը միասին ու միաձայն դաշտի հովիւների հետ փա՛ռք տուին Նրան ասելով. «Փ՛առք ի բարձունս Աստուծոյ և յերկիր խաղաղութիւն, ի մարդիկ հաճութիւն»: Էն մսուրը, որի մէջ պառկած էր նորածին Յիսուսը, գիշերուայ մթութեան մէջ լուսաւորուա՛ծ էր երկնային լուսով, որ ցոյց տայ թէ պառկողը ինքը լո՛յսն է, «Լոյս ի լուսո՛յ»-ն է: Հրեշտակները փառաբանական երգից յետոյ կրկին երկի՛նք բարձրացան, որ ցոյց տան հովիւներին ու աշխարհքին, թէ նորածին Մանուկը երկնքից է իջել: Մի չտեսնուած ա՛ստղ է երեւում արեւելքում և երեք երկրի թագաւորներ՝ ընծաներ բերելով իրանց հետ նորածին Մանկանը, նայում են աստղին և գտնում են ճանապարհը դէպի Բեթլեհէմ: Թագաւորները երկրպագում են իրա՛նց Թագաւորին:*

*Նրա քառասունօրեայ տաճար տանուելու օ՛րն էլ մի ուրիշ հրաշք ցոյց է տալիս, որ Նա սովորական մանուկներից չէ: Երուսաղէմի բնակիչ ծերունի Սիմէոնը դեռ 91 տարեկան էր, որ Աստծուն խնդրեց՝ «Տէ՛ր Աստուած, դու ինձ էնքան կե՛անք տուր, որ ես արժանանամ տեսնելու քո փրկիչ Որդուն»: Աստուած խօսք տուեց, որ նա չի՛ մեռնի: Եւ ահա՛, երբ ս. Կոյս Մարիամն ու ս. Յովսէփը քառասունօրեայ Քրիստոսին Բեթլեհէմից տարան Երուսաղէմ քաղաքի տաճարը, գնաց էնտեղ և Սուրբ Հոգուց խրատուած՝ 364 տարեկան դառած Սիմէոն ծերունին և Մանուկ Քրիստոսին իր գիրկն առնելով, ուրախութեան ու հիացման արտասուքն աչքերին, դողդոջուն ձայնով խնդրեց Նրանից, որ բաւակա՛ն համարի իր ապրելը և արձակի՛ իր կեանքի կապերը, որ խաղաղութեա՛մբ ապրի մի ուրի՛շ կեանքի, յաւիտենակա՛ն կեանքի մէջ: Հրաշքի մեծութիւնը մանաւանդ նրանու՛մն էր, որ Նա Սուրբ Հոգով մարգարէացաւ Մանկան մասին և Նրա ասած բոլոր խօսքերը կատարուեցան իր ժամանակին:*

*Էնպէս էլ հիմա, մկրտուելու ժամանակը, երբ Քրիստոս գետի ափումը կանգնած աղօթում էր, յանկարծ երկինքը բացուեցաւ, Սուրբ Հոգին աղաւնու կերպարանքով իջաւ Նրա վրայ: Ուրեմն, Քրիստոս մկրտուեցաւ Ջրո՛վ և Սուրբ Հոգով: Երկնքի բացուելը և Սուրբ Հոգու իջնելը արդէն վկայում են, որ Մկրտուողը Աստուա՛ծ է: Եւ էս երկու վկայութեան համար իբրև կնիք ու հաստատութիւն՝ երկնքից լսւում է Հայր Աստծու ձայնը, որ ասում էր. «Դա՛ է Իմ սիրելի Որդին, որին Ես հաւանել եմ»:*

*Հազարաւոր մարդի՛կ մկրտուեցան Յովհաննէսից, ո՛չ մէկի վրայ ո՛չ մի նշան չերեւաց: Բայց, երբ Քրիստո՛ս է մկրտւում, մի անգամից*

երե՛ք նշան է երեւում: Եւ ի՛նչ բանի համար են էդ նշանները: Նրա համար, որ աշխարհքը տեսնի թէ մկրտուողը Աստուած ինքն է, որ մարդու կերպարանք առած՝ եկել է ո՛չ թե ուրիշների պէս ջրով մաքրուելու, այլ ուրիշների՛ համար ջուրը մաքրելու, սրբելու, սրբացնելու: Որ աշխարհքը տեսնի թէ՝ Քրիստոս ո՛չ թէ հրէաների պէս իր մարմինը մաքրում է Յորդանանի ջրերով, այլ քրիստոնեաների՛ս համար սրբացնում է էդ ջրերը, որ մենք էլ Քրիստոսի ամենասուրբ մարմնի սրբացրած ջրերով մկրտուենք: Վերջապէս, որ աշխարհքը ճանաչի ամենասուրբ Երրորդութիւնը և էն՝ որ Հայրը կամենում է, Որդին գործում է, իսկ Ս. Հոգին կատարելագործում է: Հրէաները մկրտւում էին իրանց արած մեղքե՛րը թողնելու համար, մենք մկրտւում ենք Ադամ ու Եւայի արած մեղքը մեր վրայից սրբելու, լուանալու՛ համար: Մկրտութեան խորհուրդը մեզ համար էն դու՛ռն է, որով մենք մտնում ենք Քրիստոսին Աստուած և Աստծու Որդի հաւատացողների հասարակութեան մէջ: Մկրտուելով և յետոյ սրբալոյս Մեռոնով օծուելով՝ մենք ստանում ենք Սուրբ Հոգու շնորհքը և դառնում ենք քրիստոնեայ, դառնում ենք Քրիստոսի զինուոր և մտնում ենք Նրա դրօշակի տակը:

Երկնքի բացուելը ցոյց է տալիս Քրիստոսի աստուածային իրաւունքները. ցոյց է տալիս, որ միայն Քրիստոսի՛ միջնորդութիւնով մենք կարող ենք երկինք գնալ. որովհետեւ Նրա ձեռքումն է երկնքի բանալին: Ահա՛ ճանապարհը, ահա և բաց անողը: Ո՛վ կը հաւատայ, կը մկրտուի Հօր, Որդու և Սուրբ Հոգու անունով և կը գնայ Քրիստոսի բաց արած ճանապարհով՝ նա կ՛ընկնի Նրա և ամենքիս Հօր գիրկը, որ բազուկները տարածած սպասում է իր որդքերանց գալուն: Էն օրից բա՛ց է երկինքը, բա՛ց է ճանապարհը:

Երբ ասում ենք՝ Սուրբ Հոգին աղաւնու կերպարանքո՛վ իջաւ, չպէտք է կարծենք թէ՝ Սուրբ Հոգին աղաւնի է, կամ մի՛շտ աղաւնու կերպարանքով է երեւում: Ո՛չ, սի՛րելիս: Սուրբ Հոգին ամենասուրբ Երրորդութեան երրորդ անձն է. Նա անմարմին է, բայց մեզ երեւալու ժամանակը մէ՛կ աղաւնու նմանութիւնո՛վ է երեւում, մէկ հրեղէն լեզուի ձեւով, մէկ լուսաւոր ամպի նմանութիւնով. մի՛ խօսքով ի՞նչ ժամանակ ի՞նչ նմանութիւն որ ինքը հարկաւոր է համարում, էն նմանութիւնո՛վն է երեւում: Էս անգամ Նա աղաւնու նմանութիւնով է երեւում, որովհետեւ, աղաւնին լինելով հեզ, պարզ, անմեղ, ամենքին սիրելի և այլն, դրանով թէ Սուրբ Հոգու և թէ Քրիստոսի յատկութիւնները, նշաննե՛րն է ցոյց տալիս: Եւ, ի՛նչպէս աղաւնին ջրհեղեղից յետոյ ձիթենու ճիւղը կտցումը բռնած աւետիս բերեց Նոյին, էնպէս էլ հիմա,

Քրիստոսի մկրտութեա՛ն ժամանակը ուսոխս է տալիս աշխարհքին, թէ՝ ո՛վ մեղքերի մէջ շաղախուա՛ծ մարդիկ, յաւիտենական կորստին դատապարտուա՛ծ մարդիկ, բա՛ց արէք ձեր հոգու աչքերը և լա՛ւ տեսէք. ձեզ ձեր մեղքերից ազատող Փրկի՛չն է, որ էս րոպէիս մկրտւում է մարդկային խոնարհ կերպարանքով:

«Դա՛ է իմ սիրելի Որդին» ձայն է տալիս Հայր Աստուած երկնքից. Դա՛, որին Սուրբ Հոգով ցոյց եմ տալիս ձեզ, է՛ իմ որդին, իմ ծնցածին, բնութենակից Որդին, որ աշխարհքի ստեղծուելուց առաջ ինձ հետ էր, իմ ծնցումը, և հէնց ինքն է աշխարհքի ու ձեզ ամենիդ ստեղծողը: Ասում եմ «Դա՛», որ իմանաք, թէ ուրիշ ոչ ոք չէ իմ Որդին. այլ միայն Դա՛, որովհետև, թէպէտ հոգևոր՝ որդէգրական որդիք շատ ունեմ, բայց իմ ծնցածին Որդիս Դա՛ է միայն:

«Դա՛ է իմ սիրելի Որդին»: Ադամից սկսած մինչև Աբրահամը, Աբրահամից մինչև Մովսէս, և Մովսէսից մինչև Քրիստոս էլած բոլոր մարդիկ աչքները դցել էին Որդու՛ ճանապարհին. ականջները սրել էին վէրի՛ երկինք, էդ ձայնին էին սպասում հազարաւոր տարիներ: Եւ ահա՛ Որդին՝ Յորդանանի ջրերում, ահա՛ ձայնը երկնքից:

Բայց ի՞նչ է ուզում ասել մեզ էդ ձայնը: Նա մեզ ասում է. «Էն օրից, երբ դուք ինձնից հեռացաք, երբ ես երեսս շուռ տուի ձեզնից, դուք ընկաք մի թանձր խաւարի մէջ. դուք, ինչքան էլ ուզէք ձեր խելքով, ձեր ուժով չէ՛ք կարող դուրս գալ էդ խաւարից: Ահա ձեզ լոյս, որ ամէն լոյսի աղբիւրն է, որ լոյսի ու լուսաւորների ստեղծողն է: Սա՛ ձեզ կը հանի խաւարից դէպի լոյսը, — Դա՛ է իմ սիրելի Որդին: Ադամ ու Եւային իմ տուած թեթև պատուիրանքը չկատարելու համար՝ դուք ձեր որդքերանցով, ազգուտակով, մեծով փոքրով ընկաք ծանր մեղքերի տակ. մեղքի ու չարութեան գերի դառաք. ո՞վ կարող է փրկել ձեզ. ահա ձեզ Փրկող. Դա՛ կը լուանայ ձեր մեղքերը, Դա կ՛արձակի ձեր կապանքները. Դա՛ է իմ սիրելի Որդին: Անհովիւ մնացած՝ ուղիղ ճանապարհից մոլորուել, սար ու ձոր էք ընկել. անձնադիր հովի՛ւ է հարկաւոր ձեզ. ահա՛ ձեզ քա՛ջ հովիւ. Դա՛ է իմ սիրելի Որդին: Տաշեղի կտորի պէս տարւում էք կեանքի ծովի մէջ, քաջ ու բարի նաւապե՛տ է հարկաւոր ձեզ: Ահա՛ ձեզ ամենաբարի նաւապետ. — Դա՛ է իմ սիրելի Որդին:

Ես Դրան ուղարկում եմ ձեզ մօտ: Դա, ինչպէս յանձնել եմ Իրան, կը կատարի իմ բոլոր խորհուրդները ձեր փրկութեան համար: Դա կը տաքացնի ձեր սառած սրտերը, Դա՛ կը զարթեցնի ձեր թմրած հոգիները, և կ՛առաջնորդի ձեզ դէպի երկինք, ուրեմն, ընդունեցէ՛ք Դրան ձեր բոլոր հոգով ու սրտով, անձնատուր եղէք Դրան, ինչպէս

որ Դա եկել է ձեզ անձնատուր և անձնազոհ լինելու: Փաթաթուեցէ՛ք Դրա վրայ, ինչպէս յոյսի հաստատուն խարսխի վրայ, Դա՛ է ձեզ ձեր կեանքի ալէկոծեալ ծովից խաղաղ նաւահանգիստը հանողը:

Գնացէ՛ք Դրա հետ ամէն տեղ, ուր որ կը տանի Դա ձեզ. կատարեցէ՛ք, ի՞նչ որ կը պատուիրի ձեզ: Կ՚ասի. Սիրե՛ցէք ձեր թշնամիներին. — Սիրեցեք: Կ՚ասի.Վե՛ր առէք խաչը.— Վե՛ր առէք: Կը պատուիրի ձեզ, որ էդ խաչի վրայ խաչէք ձեր մարմինը՝ ձեր բոլոր կրքերով. Խաչե՛ցէք: Դա՛ է իմ սիրելի Որդին, Դրա՛ն լսեցէք: Թէ Դրան լսէք, թէ Ինձ, մի և նոյն է:»

Եթե մենք էլ ուզում ենք լսել Նրան, պէտք է կատարենք Նրա պատուիրանները: Ծանր բեռներ չէ՛ դնում մեր մէջքին. դժուար լուծ չէ՛ դնում մեր ուսին: Նրա լուծը քաղցր է, Նրա բեռը թեթև է: Մենք էն ժամանակը իմացած կը լինենք Հօր արած լաւութիւնները, երբ որ կը լսենք Նրա Որդուն:

Մեր տէր Յիսուս Քրիստոսի մկրտուելուց յետոյ Յորդանանը մի սրբազան գետ դառաւ բոլոր էսօրուայ 400 միլիոն քրիստոնեաների համար: Երբ բարեպաշտ քրիստոնեաները ուխտ են դնում սուրբ երկիրը, այսինքն՝ էն տեղերը, որտեղ մի ժամանակ ապրել է Յիսուս Քրիստոս, որտեղ Նրա ոտքը դիպել է, որտեղ Նրա ձայնը լսուել է, որտեղի օդը Նա շնչել է, նրանք հոգևոր ուրախութեան զգացմունքով մտնում խորասուզւում են Նրա ջրերի մէջ, որ սրբագործուած են Աստուածամարդ Քրիստոսի ամենասուրբ մարմնի շփուելուցը:

# ՏԱՂ ՋՐՕՐՀՆԵԱՑ

*Այսօր ձայնն հայրական, յերկնից իջեալ հաճոյական, սիրեցելոյ Որդւոյ վկայ. ա՛յ յո՛րդորէ, գե՛տ յորդորէ, գե՛տ Յորդանան: Յորդորական ձայնիւ երգէր մեծ Կարապետն Յովհաննէս:*

*Այսօր երկիրս երկինք եղեն, երևելով Աստուածորդւոյն, սիրով եկեալ ի մկրտիլ. ա՛յ յորդորէ…*

*Այսօր վերին դասք հրեշտակաց, ուրախացան ընդ սուրբ դալուստ Աստուածորդւոյն ի Յորդանան. ա՛յ յորդորէ…*

*Այսօր եկեալ Աստուածորդին ի Յորդանան խոնարհութեամբ, ջրով մկրտիլ ի Յօհաննէ, ա՛յ յորդորէ…*

*Այսօր Մկրտիչն Յօհաննէս ի մկրտիլն հրաժարէր, թէ՝ ինձ պարտ է ի քէն մկրտրիլ, ա՛յ յորդորէ…*

*Այսօր գոչէր քաղցր ձայնիւ Աստուածորդին Կարապետին, պարտ էր զօրէնսն կատարել, ա՛յ յորդորէ…*

*Այսօր Յօհաննէսն դողալով, ձեռօքն զՏէրն մկրտէր ի մէծ յորձանսն Յորդանանու. այ յորդորէ.*

*Այսօր բացեալ փակեալ երկինքն, զոր յանցանօք փակեաց Ադամ, և Հայր Որդի զնա կարդալով, ա՛յ յորդորէ…*

ԳՐԻԳՈՐ ԿԱԹՈՂԻԿՈՍ.

# Ի ՄԿՏՐՈՒԹԻՒՆ ՏԵԱՌՆ

Ո՜վ զարմանալի խորհուրդ այս մեծ յայտնեալ. արարիչն Աստուած ի Յորդանան եկեալ:

Կամէր մկրտիլ ի ծառայէն իւրմէ. չառնոյր Կարապետն զմկրտիլն ի յանձն:

Յորդանան լուեալ՝ փախստական դառնայր. վտակ առ վտակ պատգամաւոր լինէր:

Գնա՛, մի զարհուրիր, քո արարիչն եմ ես. եկեալ մկրտիմ և լուանամ զմեղս:

Յիսուս յառաջեաց Աստուածութեամբն ի ջուրն՝ հանդերձ Յօհաննու Յիսուս ի գետն եմուտ:

Երկինք պատառեալ, ձայն ի յերկնից իջեալ. ձայն Հօր ի բարձանց՝ Որդւոյն իւր վկայեալ:

Դա՛ է իմ որդի, ընդ որ հաճեցայ, ասէր, Դմա՛ լուարուք, որդի՛ք մարդկան՝ ձայնէր:

Սուրբ Հոգին իջեալ աղաւնակերպ տեսլեամբ, յայտնեալ ցուցանէր Հօր փառակից զՈրդին:

Արդ՝ օրհնեալ է Հայր և համագոյ Որդին, Հոգւոյն ճշմարտի փառք յաւիտեանս. ամէն:

ԳՐԻԳՈՐ ԿԱԹՈՂԻԿՈՍ.

# Ի ՄԿՏՐՈՒԹԻՒՆ ՏԵԱՌՆ

Ո՛վ զարմանալի խորհուրդ այս մեծ յայտնեալ. արարիչն Աստուած ի Յորդանան եկեալ:

Կամէր մկրտիլ ի ծառայէն իւրմէ. չառնոյր Կարապետն զմկրտիլն ի յանձն:

Յորդանան լուեալ՝ փախստական դառնայր. վտակ առ վտակ պատգամաւոր լինէր:

Գե՛տ, մի զարհուրիր, քո արարիչն եմ ես. եկեալ մկրտիմ և լուանամ զմեղս:

Յիսուս յառաջեաց Աստուածութեամբն ի ջուրն՝ հանդերձ Յովհաննու. Յիսուս ի գետն եմուտ:

Երկինք պատառեալ, ձայն ի յերկնից իջեալ. ձայն Հօր ի բարձանց՝ Որդւոյն իւր վկայեալ:

Դա՛ է իմ որդի, ընդ որ հաճեցայ, ասէր, Դմա՛ լուարուք, որդի՛ք մարդկան՝ ձայնէր:

Սուրբ Հոգին իջեալ աղաւնակերպ տեսլեամբ, յայտնեալ ցուցանէր Հօր փառակից զՈրդին:

Արդ՝ օրհնեալ է Հայր և համագոյ Որդին, Հոգւոյն ճշմարտի փառք յաւիտեանս. ամէն:

ԳՐԻԳՈՐ ԿԱԹՈՂԻԿՈՍ